## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒՆ հողագործական նախարարը կը ծանուցանէ թէ երկրին յաւելուածական արմտիքը անմիջապէս տրամադրելի է մարդասիրական ընկերութեանց, բաժնելու համար արտասահմանի թշուառ ժողովուրդներուն: Զոր լուբիա եւ բրինձ եւս պիտի բաժնուի:

ԹՈՒՐՔԻՈՅ վարչապետը, Ատնան Մենտերէս, իր կուսակիցներուն ներկայացուց տնտեսական ծրագիր մը, որ վաւերացուեցաւ անմիջապէս: Կը յուսան այս ծրագրով լուծել տնտեսական տագնապը:

ԱՐԵՒՄՏԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ Ապահովութեան նախորդ վերատեսուչը, Օթթօ Ճոն, որ վերադարձած էր արեւելեան շրջանէն, կը հարցաքննուի անդադար: Առայժմ ազատ ձգուած է: Իր փախուստը դիւրացուցած է դանիացի լրագրող մը: Կ'ըսէ թէ բոլշեւիկները թմրեցուցիչ մը հրամցնելով, յաջողած էին արեւելեան Գերմանիա փախցնել զինք: Ամբողջ դաղտնիքը լուսաբանուած չէ տակաւին: Փախստականը Մոսկուա եւ Խրիմ ալ տարուած էր եւ միշտ հսկողութեան տակ էր:

ԿԻՊՐՈՍԻ համայնավար կուսակցութիւնը արգիլուեցաւ, ինչպէս գրած էինք երէկ: Իբրեւ բողոքի ցոյց, հազար բանուորներ ամէն աշխատանք դադրեցուցին զինուորական հաստատութեան մը մէջ, Նիկոսիոյ պանդոկներուն սպասաւորներն ալ գործադուլ մը սարքեցին: Թերթերու հրատարակիչները կը սպառնան փակել տպարանները: Կ'ըսուի թէ կուսակցութիւնը քսան հազար անդամներ ունի արհեստակցական միութեանց մէջ: Ձերբակալուած են 135 կասկածելիներ:

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ խորհրդային դեսպանը մերժեց արեւմտեան պետութեանց բողոքագիրը, կրկնելով թէ Պերլինի արեւելեան շրջանին բարեկարգութեան պատասխանատուն է ժողովրդական ոստիկանութիւնը եւ թէ Գերմանիոյ նախկին մայրաքաղաքը մաս կը կազմէ գերիշխան պետութեան մը եւ ոչ թէ գրաւեալ շրջան մըն է:

ԱՆԳԼԻՈՅ աշխատաւորական կուսակցութեան «առաջնորդ» նշանակուեցաւ Պ. Կէյթսքէլ, 157 ձայնով: Ձախ թեւին թեկնածուն, Պիւըն, շահած էր 70 ձայն: Նոր վարիչը նախապէս ելմտական նախարար էր եւ արագ բարձրացում ունեցած է: Ինչպէս իր նախորդը, Էթլի, կը պատկանի բարեկեցիկ դասուն եւ վարպետ կազմակերպիչ մըն է, ինչպէս եւ քաջ տնտեսագէտ:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ երկու շրջուն գործակալները, մարեշալ Բուլկանին եւ Ն. Խրուշչեւ, որոնք Հնդկաստանէն ճամբայ ելած էին դէպի Աֆղանիստան, տեղւոյն կանգ առնել ռուսական Թերմեզ քաղաքին մէջ, օդին սաստկութեան հետեւանքով: Երկուքն ալ կը հաւատան թէ յաջողած են համոզել Հնդկաստանի 370 միլիոն բնակիչները թէ Խ. Միութիւնը իրենց ամենամեծ բարեկամն է:



## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կէյվէցի եւ Խարբերդցի հայրենակիցներու փափաքով, այս կիրակի մասնաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի Խարբերդի նահատակ առաջնորդ Կէյվէցի Տ. Պսակ Ծ. վրդ. Տէր Խորէնեանի և 1920 Յուլիս 8ին Կէյվէի մէջ նահատակուողներու յիշատակին: Անունները պիտի յիշուին, եթէ ընտանիքի անդամներ կանխապէս տեղեկացուցած ըլլան նոյն առտուն:

Այրի Տիկին Հայկանուշ Ղազարոսեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Նորայր Տէպօժէտեան, Պ. Կ. Սիմոնեան, Տէր եւ Տիկին Գրիգոր Գասպարեան, Տէր եւ Տիկին Ն. Սիմոնեան, Տէր եւ Տիկին Ծնունդ Սէտէֆճեան, Տէր եւ Տիկին Արմենակ Աւետեան, եւ Առաքել Ղազարոսեան, Տիկ. Վարդանեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Օննիկ Թորանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Ներսէս Կարապետեան, եւ զաւակները, Տէր եւ Տիկին Աղասի Խաչատուրեան խորունկ ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, կնքահօր եւ ազգականին

ՎԱՀՐԱՄ ՂԱԶԱՐՈՍԵԱՆի

(Կիւրլէցի, 56 տարեկան)

մահը որ տեղի ունեցաւ իր բնակարանը, 1 ռիւ տը Տիժօն, Ալֆորվիլ:

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր, ուրբաթ, ժամը 15.45ին Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն, կը խնդրուի ներկայ իբր այդ նկատել:

ՎՐԻՊԱԿ.— Հինգշաբթի (15 Դեկտ.) «Յառաջ»ի նոր շրջանի թիւը պիտի ըլլայ 3263 (սխալմամբ տպուած է 3267):

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հանդիսաւոր քառաձայն պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուին այս կիրակի ժամը 11ին՝

**Madame RENÉ COTYի**

մահուան քառասունքին առթիւ:

*
**

Պ. Սարգիս Եղիազարեան եւ զաւակները՝ Տէր եւ Տիկին Ազատ Եղիազարեան եւ զաւակները, Պ. Վռամ Եղիազարեան, Տէր եւ Տիկ. Գէորգ Զիլինկիրեան, Պ. Խ. Եղիազարեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Վարդգէս Եղիազարեան, Տէր եւ Տիկին Աւետիս Մարգարեան եւ Փաշալեան ընտանիքները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց կնոջ, մօր, մեծ մօր, քրոջ եւ ազգականին՝

ՏԻԿԻՆ ԵՂՍԱ ԵՂԻԱԶԱՐԵԱՆի

մահուան քառասունքին առթիւ, այս կիրակի յետ պատարագի, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցին:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

ԼՐԱՏՈՒ ԱՐՈՒԵՍՏԻ

Դեկտեմբեր 17ին, Ֆրանսական ձայնասփիւռի ազգային ռատիօկայանէն (Շէն Նասիոնալ) ժամը 16.40ին պիտի տրուի Լէ Միւզիկըէնի ունկնդրութիւնը, որուն ընթացքին փոքրիկն Անի Կազէր — Ղազարեան պիտի նուագէ դաշնակով:

ԽՆՋՈՅՔ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Վիէնի մասնաճիւղին եւ մասնակցութեամբ Կեդր. Ֆրանսայի մասնաճիւղերուն: Այս կիրակի կէսօրէն վերջ:

ՀԱՃԵԼԻ ԺԱՄԱՆՑ ՄԸ

Կը խնդրուի շրջանի ընկերներէն ճշդապահ ըլլալ:



## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս ուրբաթ ժամը 21ին, Քաֆէ Ռեժան:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. «Սեւակ» խումբի ժողովը այս ուրբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր - Սերոբ Մ. Եօթնեղբայրեան խումբի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին: Ներկայանալ անդամատետրով: Կարեւոր օրակարգ:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէ՝ ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ ժամը 20.30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրահը: Պարտաւորիչ ներկայութիւն:

Հ. Յ. Դ. Վիէնի կոմիտէն իր հիւրերուն կը սպասէ ժամը մէկէն սկսեալ օթօքարներուն կայարանը, շոգեկառքի կայարանին առջեւ:

ԱՆԻԷՌ - ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊ.— Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր անդամները այս չորեքշաբթի իրիկուն, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՊԱՆԵԷՕ - ՔԱՇԱՆ.— Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս ուրբաթ, ժամը 20.30ին, ծանօթ հաւաքատեղին: Բացակաները նկատի պիտի առնուին:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 20.30ին, իր դպրոցի սրահին մէջ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Կարեւոր օրակարգ:

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Յ. Պ. Փոն տը Շէրիւի.— Անունը կարեւոր չէ: Ի՞նչ դիտողութիւն ունիք:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ.— Ֆ. Կ. Խաչի անդամներուն այցելութեան առթիւ, Տէնսինցի Պ. Յովհաննէս Մանուկեան 500 ֆրանք կը նուիրէ մասնաճիւղին, իր խորին երախտագիտութիւնը յայտնելով: Մասնաճիւղը արագ ապաքինում կը մաղթէ:



IMPRIMERIE ARAXES 46, Rue Richer. Paris.

հանջէն անկախ հանրապետութիւն մը հաստատել Ալժերիոյ մէջ։ Ընդհ. ժող 61 խմբ անդամները որոշեցին չարունակել իրենց պաշտօնը, սպասելով Ֆրանսայի երեսփ. ընտրութեանց արդիւնքին։

× Լեռնային շրջանի (Օրէս) ապստամբապետներէն Ալի Մեքքի անձնատուր եղաւ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍԱՐԻ նոր կառավարութիւնը պիտի կազմէ Յոքթ. Նէյ, գործակցութեամբ համաքերման հոսանքներու։

ՀԻՒԼԷԱԿԱՆ ՈՒԺԻ կեդրոն մը պիտի հաստատուի Ճինոնի մէջ, Լուառի եւ Վիէնի միացման կէտին վրայ։

ԵՐԿՈՒ ԳԵՐՄԱՆ ԶՕՐԱՎԱՐՆԵՐ եւս նշանակուեցան Ատլանտեան ճակատին համար, ինչպէս եւ ծովակալ մը։

ՇՈԳԵԿԱՌՔԻ արկածները երբեք կը յաջորդեն Անգլիոյ մէջ, մեծ մտահոգութիւն պատճառելով։ Դեկտ. 24ին 4րդ արկածը պատահեցաւ։ Մեռեալ՝ 25 հոգի, վիրաւոր՝ 179։

ԿԻՊՐՈՍԷՆ կը հեռագրեն թէ 135 համայնավարներ, որոնք ձերբակալուած էին անցեալ չաբթու, նամակ մը ուղղեցին կուսակալին, ծանուցանելով թէ ծոմ պիտի պահեն Ծնունդի օրէն սկսեալ։

ԵԼԵԿՏՐԱԿԱՆ ամենամեծ կայանը կը շինուի կեդրոնական Սիպերիոյ մէջ, ինչպէս կը հեռագրեն Մոսկուայէն։

ԼԵՀԱՍՏԱՆԻ բոլշեւիկեան իշխանութիւնը որոշեց խստացնել պատժական օրէնքը, նկատելով որ հետզհետէ կը ծաւալին կաշառակերութիւնը, վնասարարութիւնը եւ պատանեկան յանցագործութիւնները։ Նոր օրէնքը կաղապարուած է ռուսականին վրայ եւ մահապատիժ կը նախատեսէ միայն հայրենադաւութեան համար։ Գերագոյն պատիժն է 25 տարի բանտարկութիւն։

ԻՏԱԼԻԱ ցարդ հակառակ էր Ծնունդի տօնածառեր սարքելու աւանդութեան։ Այս տարի որոշած են ընդունիլ եւ աւելի քան մէկ միլիոն ծառեր ծախուած են արդէն։ Ֆաշական իշխանութիւնը հեթանոսական և հակիտալական կը նկատէր տօնածառի սովորութիւնը, միեւնոյնատեն վնասակար՝ անտառներու համար։

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Այս չորեքշաբթի կը խօսի Բաբգէն Խըրիմեան, նիւթ ունենալով «Ներծոր գեղձերու դերը մարդկային կազմին մէջ»։

Քաֆէ Քառէի վերնայարկը, ժամը 21·30ին։ Մուտքը ազատ է։

Այրի Տիկին Մկրտիչ Դաւիթեան, Տէր եւ Տիկին Ալպեր Դաւիթեան եւ զաւակը՝ Ժիրայր, Տէր եւ Տիկին Օննիկ Դաւիթեան եւ զաւակը՝ Ժօսլին, Պ. Մեսրոպ Դաւիթեան, Այրի Տիկին Տիրուհի Եուքսելթ, ինչպէս նաեւ Մարտիրոսեան, Սագըլեան, Տէր Խաչատուրեան, Ինճէեան, Աշճեան, Ֆէնտեան, Ալթունեան, Պօղեան, Զատիկեան եւ Շիշլեան ընտանիքները խորին ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, եղբօր, հօրեղբօր եւ ազգականին՝

ՄԿՐՏԻՉ ԴԱՒԻԹԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ իր բնակարանին մէջ, Փարիզ, 54 տարեկանին։

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի երկուշաբթի, 26 Դեկտ. ժամը 15·45ին, Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի գիւղին գերեզմանատունը։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներել իբր այդ նկատել։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

Գեղեցիկ կազմածով մը եւ օգտակար նուէր մը

### ՄԱՅԻՍԵԱՆ ԾԱՂԻԿՆԵՐ ՄԱՐԵՄԵԱՆ ԺՊԻՏՆԵՐ

568 էջնոց հետաքրքրական գիրքը

Գեղեցիկ տպագրութեամբ, բազմաթիւ պատկերներով։ Աստուածածնի չարականներուն վրայ խորհրդածութիւններով, վաւերական պատմութիւններով ու բանաստեղծութիւններով։

Գինն է 1000 ֆրանք։

Ստանալու համար դիմել հեղինակին՝ Միքայէլ Վ. Մոմճեանի,

78, Rue Rabelais, Lyon (Rhône)

Նոյն հեղինակէն՝ Լուրտի հրաշալի տեսիլքներուն պատմութիւնը։

Գին 300 ֆրանք։

## ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

●

Օր. Սոնա Փափազեան (Փարիզ) յաջողութեամբ ներկայացնելով բժշկական տոքթորայի թէզը, ստացած է պետական վկայականը։

ՄԱՐՍԻԼԱՀԱՅ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԾ ԵՆ

## ԳՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ՄԸ

Նուիրուած Կ. Փոլատեանի նոր գործին՝ ՎԵՐԱԴԱՐՁ։

Այս չորեքշաբթի ժամը 21ին, Քաֆէ Նուայի սրահը։

Կը խօսին՝ ՏԷՐ ԵՒ ՏԻԿ. ԺԱՆ ՊԱԼԱՐ

Կ. Փոլատեանի գործը կը վերլուծեն.— Պ. ԲԵՆԻԱՄԻՆ ՄԻԼՏՈՆԵԱՆ, Պ. ՎԱՐԴԱՆ ՍԱՐԳՍԵԱՆ, Պ. ՄԿՐՏԻՉ ՀԱՃԵԱՆ։

Օր. Ա. Սարգսեան կ'արտասանէ «Վերադարձ»էն հատուածներ, զոր ֆրանսերէնի թարգմանած է

ԼԻՒՔ ԱՆՏՐԷ ՄԱՐՍԷԼ

Հաւաքոյթի ընթացքին գիրք չի ծախուիր

(Գինեձօնի մասնակցութեան համար որ եւ է վճարում չկայ)։

## «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ»

Կազմակերպուած Ֆր. Կ. Խաչի Կեդր. վարչութեան եւ Փարիզի շրջանի մասնաճիւղերու կողմէ, Յունուար 2ին, ժամը 14 – 18, Սոսիէթէ Սավանթի թատերասրահին մէջ, 8 ռիւ Տանթօն, մեթրօ Սէն Միշէլ կամ Օտէոն։

Գեղարուեստական ճոխ բաժին։ Շարժանկար։ Կաղանդ Պապա։

ԲՐԻԹԱՆԱՑԻՆԵՐՈՒՆ

Անիէռ, Փորթ տ'Իթալի, Պիւէթօ, Պուա Քոլոմպ, Իսի լէ Մուլինօ, Քլամար, Ասնուվիլ լէ Կոնէս, Սարսէլ, Էզանվիլ, Պանեէօ, Քրէթէյ, Շաւիլ; Ժիւվիզի, Լիվրի – Կարկան, Սեւռան, Սէնթ Ուէն եւ այլուր բնակող բոլոր Մեծ Նոր գիւղացիներէն, կը խնդրուի հաղորդել իրենց անունն ու մականունը, հասցէն եւ ընտանեկան պարագաներուն թիւը՝ անձ գլուխ, նաեւ ամուսնացած զաւակներուն եւ փեսաներուն անու եւ հասցէն՝ Պ. Թադէոս Մ. Այվազեանի, 194 ռիւ Վանտոմ, Լիոն, Ռոն։



## Ս. ԽԱՉ

Այսօր ճրագալոյց Ծննդեան։

Այսօր, կիրակի, Ծնունդ։

Ժամը 9·30ին ժամերգութիւն։

Ժամը 10·30ին ձայնաւոր պատարագ զոր կը մատուցանէ Գեր. Կ. Ամատունի։

(Շար.)



### «ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ»Ը ԼԻՈՆԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը՝ «Մանուկներու Օր»ը կը տօնէ, Յունուար 15ին, կիրակի օր, կէսօրէ վերջ, ժամը 3ին, Յոյներու սրահը, 5 ռիւ Պօնըֆուա, Լիոն։

Պզտիկներու կողմէ պիտի ըլլան երգ, արտասանութիւն, անակնկալներ եւ շարժանկար։ Նուէրներ պիտի բաժնուին մանուկներուն։

IMPRIMERIE ARAXES 46, Rue Richer. Paris

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՊՈՄՈՆ.— Հ. Յ. Դ. Զաւարեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս հինգշաբթի ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

Օր. ԼՈՒՍԻՆ ՆԱԳԱՇԵԱՆ

Պ. ԿԱՐԱՊԵՏ ԳՈՒԼՈՒՄԵԱՆ

Ամուսնացած

18 Դեկտ. 1955 Մարսէյլ

Այս առթիւ Տէր եւ Տիկին Գուլումեան հրապարակաւ շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ կամ հեռագրով շնորհաւորեցին, եւ հետեւեալ նուէրները կ'ընեն.—

Հ. Յ. Դ. Մշակոյթի Տան հազար ֆր.։

Հ. Յ. Դ. Պոմոնի Զաւարեան ենթակոմիտէի հազար ֆրանք։ Հ. Յ. Դ. Սէն Լուի Նոր Սերունդին հազար ֆրանք։ Համազգ. Մշակութային Միութեան (Մարսէյլ) հազար ֆրանք։ Ֆ. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղի դպրոցին հազար ֆրանք։ «Յառաջ»ի բարգաւաճման հազար ֆրանք։

(Մշակոյթի Տան նուէրը ստանալ «Յառաջ»էն։

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Վարչութեան անդամները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին այս երեքշաբթի, ժամը 6·30ին սրճարան Ռեժանի վերնայարկը։

Վերջին ժողովն է այս, ուր պիտի որոշուի ընդհ. ժողովին թուականը։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Զարեհ Սէմէրճեան, Տէր եւ Տիկին Շահան Սէմէրճեան, Տէր եւ Տիկին Արտաշէս Դատաւորեան, Տէր եւ Տիկին Օգսէն Խարբութլեան, ինչպէս նաեւ համայն ընտանեկան պարագաները խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք վշտակցեցան իրենց, անձամբ, հեռագրով, նամակով, ծաղկեպսակներով կամ նուիրատուութիւններով, իրենց սիրելի հօր եւ ազգականին՝ ՄԻՀՐԱՆ ՍԷՄԷՐՃԵԱՆԻ կսկծալի մահուան առթիւ։

ՆՈՒԷՐ.— Մանուկներու օրուան առթիւ Տիկին Սէրճանեան երկու հազար ֆր. կը նուիրէ Կապոյտ Խաչին։

Ստանալ «Յառաջ»էն։

